## ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ԵՐԵԿՈՅԹՆԵՐ

*Համազգային Ընկերութեան պարբերական դասախօսութիւնը այս Շաբաթ, Յունիս վեց, երեկոյեան ժամը 9ին, Մըշակոյթի տան մէջ* (17 Ռիւ Պլէօ)։

**ՆԱԽԱԳԱՀ՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ**
**ԴԱՍԱԽՕՍ՝ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ**

*Նիւթը՝ ՊՈՐԻՍ ՓԱՍԹԵՐՆԱՔ՝ (Նոպելեան մրցանակ)* ։

Մարդը, բանաստեղծը եւ իր վէպը՝ «ՏՐ. ԺԻՎԱԿՕ»։

### ՄԵԼԳՈՆԵԱՆ ԿՐԹ. ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ՆՈՐ ՍԱՆԵՐՈՒ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

1.— *Յառաջիկայ* 1959 – 1960 *տարեշրջանին համար Մելգոնեան Կրթ. Հաստատութիւնը սահմանափակ թիւով նոր սաներ պիտի ընդունի զանազան հայ գաղութներէ* ։

2.— *Թեկնածուները պէտք է շրջանաւարտ ըլլան Ազգ. Վարժարանի մը Զ. դասարանէն եւ յանձնարարուած տնօրէնութենէն* ։

3.— *Թեկնածուները մինչեւ* 30 *Յունիս պէտք է լրացուցած ըլլան իրենց բոլոր փաստաթուղթերը համաձայն ընդունելութեան պայմաններու ցուցակին եւ գանուին յանձնած շրջանի Բարեգործականի գրասենեակին* ։

4.— *Ընդունելութեան պայմաններու մանրամասնութեանց համար դիմել Բարեգործականի տեղական գրասենեակին* ։

5.— *Բոլոր թեկնածուները մուտքի գրաւոր քննութիւն պիտի անցընեն Յուլիս* 10 – 11, *Բարեգործականի Տունը, առաւօտեան ժամը* 9 – 12, *հետեւեալ նիւթերու մէջ — Հայերէն, անգլերէն, Հայոց պատմութիւն եւ Թուաբանութիւն* ։

6.— *Նկատի ունենալով որ Կիպրոս մուտքի վիզան ապահովելը ժամանակ կը պահանջէ, Յունիս 30էն ետքը կատարուած դիմումները անհետեւանք պիտի մնան*։ (ԿՆԻՔ)

15 Մայիս, 1959, Նիկոսիա

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

*Այս Կիրակի առաւօտ ժամը* 10.45*ին*։ *Կը խօսի Պատ. ՍԻՍԼԵԱՆ*։ *Նիւթ՝* «Ահա քու առջեւդ, բաց դուռ մը դրի»։

### ԾԱԽՈՒ ՅԱՐԿԱԲԱԺԻՆ

*Մօտիկ արուարձանի մը մէջ, վեց սենեակ, խոհանոց, բաղնիք, ջերմութիւն, չորրորդ յարկ, առանց վերելակի*։ *Կարելի է երկու յարկաբաժինի վերածել*։ *Մանրամասնութեանց համար անձամբ դիմել «Յառաջ»ի վարչութեան*։

### ՎԱՐՁՈՒ ՅԱՐԿԱԲԱԺԻՆ

*Ամառուան ամիսներուն համար վարձու են երեք սենեակ, խոհանոց եւ* տուշ, Անթիպի *մէջ*։ *Հրաշալի տեսարան, ծովէն երկու քիլոմեթր հեռու*։ *Մանրամասնութեան համար գրել՝*

M. GHARAKEN
VILLA SAYAT NOVA, LA CONSTANCE
ANTIBES - A.M.

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

*ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՐՍԷԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ շրջանի բոլոր ընկերները*։ *Այս Շաբաթ ժամը* 21*ին*։ *Առնուվիլի ծանօթ հաւաքատեղին*։ *Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է*։

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. Ռուբէն Միութեան ժողովը՝ այս Կիրակի, ժամը* 15*ին, սովորական հաւաքատեղին*։ *Պարտաւորիչ ներկայութիւն*։

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան ընդհանուր ժողովը այս Կիրակի, Պար տիւ Կլօպ, առաւօտեան ժամը* 9*ին*։ *Նիւթական ու բարոյական զեկուցում եւ վարչութեան ընտրութիւն*։

*ՎԱԼԱՆՍԻ Հայ Մարզական Միութեան տարեկան ընդհ. ժողովը, այս Երեքշաբթի ժամը* 20.30*ին, Միութեանս կեդրոնը, Պ. Սարգիս Միթիլեանի սրճարանի վերնայարկը*։ *Օրակարգ.— Ա) Նիւթական ու բարոյական հաշուետուութիւն*։ *Բ) Նարչութեան ընտրութիւն*։ *Գ) Առաջարկներ եւ թելադրութիւններ*։

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ

20, RUE JEMMAPES

*ՄԱՐՍԷՅԼ*

*ՄԱՐՍԷՅԼ.— Պաշտամունք՝ այս Կիրակի, Սէն Ժերոմ՝ ժամը* 9.30*ին, Ռիւ Ժէմար, Մարսէյլ՝ ժամը* 10.45*ին*։
*Կը քարոզէ՝ Վեր. Յ. ՀԵԼՎԱՃԵԱՆ*։
*Նիւթ՝* «Քրիստոս ամէն բանի մէջ նախապատիւ»։

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐ Կ'ՈՒԶՈՒԻՆ

REPRÉSENTANTS A CARTES MULTIPLES

Տարիքը կարեւորութիւն չունի.

ՊԱՅՄԱՆԱՒ ՈՐ ԼԱՒ ՃԱՆՉՆԱՅ

*Ա) Արեւելեան նպարավաճառներ, Հայ, Յոյն, Արաբ, Պուլկար եւն. եւն.*։
*Բ) Արեւելեան եւ ֆրանսական պանդոկներ, ճաշարաններ եւ սրճարաններ*։
Ֆրանսերէն գրել՝

ORIENT EXPRESS, 87, Rue Baudin
Levallois Perret (Seine)

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Հայ տիկին մը պանդոկի մը մէջ աշխատելու համար, Անգլիա, չորս ամիս*։ *Դիմել՝*

**Charles**
62, Rue St.-Honoré. Paris 1er
Métro : Louvre ou Chatelet



## Հ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ 41ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ԿԸ ՏՕՆՈՒԻ, ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ, ԲԱՑԱՌԻԿ ՇՈՒՔՈՎ

ԿԻՐԱԿԻ, 14 ՅՈՒՆԻՍ ԻՐԻԿՈՒԱՆ ԺԱՄԸ 21 ԻՆ
ՔԱԶԱ Տ'ԻԹԱԼԻԱՅԻ ԸՆԴԱՐՁԱԿ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

*ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ*
Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ
*ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ*
Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԵՒ ԲՈԼՈՐ ԽՈՒՄԲԵՐՈՒՆ

*ԿԸ ԽՕՍԻՆ*
**ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ ԵՒ Կ. ՄԵՀԵԱՆ**
Կ'երգէ Փարիզէն՝ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ
**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ**
*ԵՐԳ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ*
ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ ՄԸ
Հ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ՄԷԿ ՆԻՍՏԸ
*(Ե. ՍԱՀԱԿԵԱՆ, ԱԼ. ԽԱՏԻՍԵԱՆ, Լ. ՇԱՆԹ, Ն. ԱՂԲԱԼԵԱՆ, ՋՕՐ. ՍԻԼԻԿԵԱՆ — կ'արտասանեն իրենց պատմական ճառերը)*
**ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ, ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ԵՏՔ**

### ԻՍԻԻ ՄԷՋ

*Այս Կիրակի ժամը երեքին, Խրիմեան սրահին մէջ*։
*Նախաձեռնութեամբ* «Զաւարեան» *կոմիտէի*։ *Հովանաւորութեամբ Փարիզի Շրջ. կոմիտէի*։
*Կը խօսի ընկեր Կ. ՄԵՀԵԱՆ*։
*Գեղարուեստական ճոխ բաժին*։
*Մուտքը ազատ է*

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Յունիս 7ին։

*Ժամը* 15.30*ին, Րիւ Ժէլի սրահին մէջ, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէին եւ մասնակցութեամբ Կապոյտ Խաչի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին*։
*Կը նախագահէ Ընկ. Ս. ՍԻՍԼԵԱՆ*։
*Կը բանախօսէ ընկ. ԽԱԶԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ*։

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէին, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին, Ֆ. Կապ. Խաչին եւ Ազգային Միութեան*։
*Այս Շաբաթ, ժամը* 20.30*ին, Գ. Թագաւորեանի սրահին մէջ*։
*Կը նախագահէ ընկ. ՆՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ*
*Կը խօսի ընկեր ՍԻՍԱԿ ՍԻՍԼԵԱՆ*
*Գեղարուեստական բաժին, երգ, արտասանութիւն եւ մեներգ*։
Մուտքը ազատ է։

×

### ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԷՋ

Յունիս 14ին։

Սամուէլ – Մուրատեան վարժարանի Աշակերտաց Ծնողքներու եւ Մուրատ–Ռափայէլեան Ն. Ա. Միութեանց միացեալ կազմակերպութեամբ

## ԵՂԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՇՔԵՂ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

*ՎԱՐԺԱՐԱՆԻ ԾԱՌԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ*
ԿԻՐԱԿԻ, 7 ՅՈՒՆԻՍ, ԺԱՄԸ 16էն ՍԿՍԵԱԼ

**ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 20 ԷՆ ԵՏՔ**
*... ՈՒՐԱ՜Խ, ԶՈՒԱ՜ՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ ...*
**ՏԷՏԷՃԵԱՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ**
իր ամբողջական կազմով

Փարիզի մէջ առաջին անգամ
**Ա Ն Ր Ի  Մ Ա Ր Գ Ա Ր Ե Ա Ն**
հեղինակ–երգիչ

*ԵՐԳ, ԽՄԲԱԿԱՆ ՊԱՐ, ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ*
« Շիշ քէպապ »
*ՃՈԽ ՊԻՒՖԷ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ*
Անապատ օդի պարագային, հանդէսը տեղի կ'ունենայ ներքին սրահներու մէջ

26, RUE TROYON, SÈVRES MÉTRO : PONT DE SÈVRES





## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Յ. Կապ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ այրի Տիկին Ժանին Թաշճեանի, եւ իր ընտանեկան պարագաներուն իրենց ամուսնոյն, եղբօր եւ ազգականին, ողբացեալ Շաւարշ Թաշճեանի մահուան տխուր առթիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Մայիս 28ի տօնակատարութեան կազմակերպիչ յանձնախումբը կու գայ հրապարակաւ իր շնորհակալութիւնները յայտնել Իսի լէ Մուլինօ, Քաֆէ Սփորի տնօրէն Պ. Յակոբ Ազատեանի որ սիրայօժար եւ ձրի կատարեց օրուան պուֆէի խմիչքներու փոխադրութիւնը:



ԿՐԸՆՈՊԼԸ.— Կապ. Խաչի դպրոցական տարեվերջի քննութիւն, կիրակի 21 Յունիս, առաւօտեան, պտոյտ դպրոցի աշակերտութեան համար կէսօրէ վերջ:

Մրցանակաբաշխութեան դաշտահանդէս, կիրակի 28 Յունիսին: Անձրեւի պարագային կը յետաձգուի Յուլիս հինգին:

## ՅԱՐԳԱՆՔԻ ԵՐԵԿՈՅ

Երաժշտապետ՝
ՊՕՂՈՍ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆԻ
(35ամեայ գործունէութեան առթիւ)

Նախաձեռնութեամբ խումբ մը բարեկամներու:

Բարձր հովանաւորութեամբ՝
ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Կը նախագահէ՝
Պ. ՎԱՀԷ ԹՕՍՈՒՆԵԱՆ
(Ատենապետ Եկեղեցւոյ Հոգաբարձութեան):

Յունիս 13, Շաբաթ իրիկուն ժամը 20·45
Սալ Շոփէն

Գեղարուեստական բաժին:

Փարիզի Եկեղեցւոյ երկսեռ երգչախումբը, ղեկավարութեամբ Պ. ԱՐՍ. ՊԱՐԹԵՒԵԱՆԻ:

Օր. Իրիս Պիւպիւլեան (երգ), Օր. Սոնիա Գաբրիէլեան (դաշնակ), Պ. Նուբհան Մարգարեան (արտասանութիւն), Պ. Աւետիս Քիւքէլեան (երգ), Օր.Ներ Նահապետեան քոյրեր եւ Պ. Լ. Մոմճեան:

Կը ներկայացուի Էտմոն Ապուի՝
« ԽԵՆԹԵՐՈՒ ԲԺԻՇԿԸ »

Խիստ ծիծաղաշարժ զաւեշտ մէկ արար:

Կը մասնակցին՝ Ա. Պետրոսեան, Ժ. Քէշիշեան եւ Օր. Յասմիկ, Ն. Պշտիկեան, Ս. Յակոբեան:

## ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլլէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս երեքին: Ա. խումբի վերջին բժշկական քննութիւնները տեղի պիտի ունենան Ուրբաթ 26 եւ երկուշաբթի 29 Յունիսին, ժամը 9–12, Հայ Կարմիր Խաչի դարմանատունը, 15, Րիւ Ժան Կուժօն, Փարիզ: Կը խնդրուի ծնողքներէն ներկայանալ Ֆիշ տը Լիէզոններով:

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի 14 Յունիս, ՄԱՏԱՂՕՐՀՆԷՔ

Մանրամասնութիւնները յաջորդով:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ՀԱՄԱԽԱՐԲ. ՄԻՈՒԹԻՒՆ

ԼԻՈՆԻ եւ Տէսինի մասնաճիւղերու դաշտահանդէսը, կիրակի, հինգ Յուլիս, Տէսինի մէջ:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի մարմիններու եւ խումբերու ներկայացուցչական ժողովը՝ այս Շաբաթ, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ:

ՕՐԱԿԱՐԳ.— Զեկոյց պատգամաւորներու եւ ընտրութիւն:

ՎԱԼԱՆՍԻ Հայ Մարզական Միութեան տարեկան ընդհ. ժողովը, այս Երեքշաբթի ժամը 20·30ին, Միութեանս կեդրոնը, Պ. Սարգիս Միթիլեանի սրճարանի վերնայարկը: Օրակարգ.— Ա) Նիւթական ու բարոյական հաշուետուութիւն: Բ) Վարչութեան ընտրութիւն: Գ) Առաջարկներ եւ թելադրութիւններ:

## ՄԱՅԻՍ 28Ը

ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԷՋ
Յունիս 14ին:

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ Ս. ՂԱԶԱՐ - ՎԵՆԵՏԻԿ

★

### ՄԱՐՍԷՅԼԻ ԽՈՒՄԲ

ՄԵԿՆՈՒՄ՝ Շաբաթ, Օգոստոս 8,
ՎԵՐԱԴԱՐՁ՝ Երկուշաբթի, Օգոստ. 18:
Պայմաններուն համար դիմել՝
Պ. ՖԷՐՏԻ ԱՊԱՃԵԱՆ
293, Ave. St.-Julien, Marseille 12e - Tel. 4879-75

×

### ՓԱՐԻԶԻ ԽՈՒՄԲ

Ս. ՂԱԶԱՐ, ՎԵՆԵՏԻԿ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԸ
ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս 8:
ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս 31:
Ճամբորդներու թիւը սահմանափակ է:
Արձանագրուիլ մինչեւ Յուլիս 5:
Պայմաններու համար դիմել՝
Պ. ՉՊՈՒՔՃԵԱՆ
7, Rue de la Grange Batelière, Paris - 9e Tél. PRO. 56 31
Պ. ԹԱՐՈՆ
58, Bd. Serrurier, Paris 19 - métro Pré-St-Gervais
Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11 Ave. Béranger, Arnouville-les-Gonesses (S. et O.)

## ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԼԻՈՆԷՆ՝ ԱՐՍ

Արսի Սուրբ Ժողովրդապետին մահուան դարադարձին առթիւ հայկական ուխտագնացութիւն մը տեղի պիտի ունենայ Լիոնէն Արս 21 Յունիսի կիրակի օրը:

Լիոնէն մեկնում, առտուն ժամը եօթին եւ Արսէն վերադարձ իրիկունը ժամը 7ին:

Արսի մէջ, առտուն ժամը 8·30ին Հայածէս ձայնաւոր պատարագ, իսկ կէսօրէն յետոյ Թափօրի մասնակցութիւն:

Երթուդարձի համար 500 ֆրանք ճանապարհածախք անձ գլուխ: Արձանագրութիւններու համար դիմել մինչեւ Յունիս 15, Միքայէլ Վ. Մոմճեանի, 187 Տիւկէֆլէն փողոց:



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## Հ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ 41ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ԿԸ ՏՕՆՈՒԻ, ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ, ԲԱՑԱՌԻԿ ՇՈՒՔՈՎ.

ԿԻՐԱԿԻ, 14 ՅՈՒՆԻՍ ԻՐԻԿՈՒԱՆ ԺԱՄԸ 21 ԻՆ
ՔԱՋԱ Տ'ԻԹԱԼԻԱՅԻ ԸՆԴԱՐՁԱԿ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ
Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԵՒ ԲՈԼՈՐ ԽՈՒՄԲԵՐՈՒՆ

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ

ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ ԵՒ Կ. ՄԵՀԵԱՆ

Եւ Նոր Սերունդի ներկայացուցիչը՝ ՍԱՐՀԱՏ ԳԻԼՃԵԱՆ

Կ'երգէ Փարիզէն՝ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

Արտասանութիւն՝ Օր. Է. Կարապետեան, Օր. Ա. Յարութիւնեան, Պ. Յ. Սարգիսեան, ջութակ՝ Պ. Հրայր Գլըճեան, դաշնակ՝ Օր. Է. Կարապետեան, մեներգ՝ Օր. Ժագլին Փափազեան:

ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ ՄԸ
Հ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ՄԷԿ ՆԻՍՏԸ
(Ա. ՍԱՀԱԿԵԱՆ, ԱԼ. ԽԱՏԻՍԵԱՆ, Լ. ՇԱՆԹ, Ն. ԱՂԲԱԼԵԱՆ, ԶՕՐ. ՍԻԼԻԿԵԱՆ
— կ'արտասանեն իրենց պատմական ճառերը)

ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ, ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ԵՏՔ

## ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԹԱՏԵՐԳՈՒԹԵԱՆ

### Ա. ՇԻՐՎԱՆԶԱԴԷԻ ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

SALLE PAUL FARALICQ
21, Rue Yves Toudic, Paris - Métro République

Երկուշաբթի, Յունիս 8, ժամը ճիշդ 20·45ին:

Մասնակցութեամբ՝ Փարիզահայ թատրոնի լաւագոյն արուեստագէտներուն:

ԴԵՐԱՍԱՆ ԳԷՈՐԳ ՏԷՐՎԻՇԵԱՆ
Կը ներկայացնէ եւ կը խաղայ

### ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ

Տրամ չորս արար, Ա. Շիրվանզադէի: Բեմադրութիւն Տիկ. ԱՆՆԱ ԲՈՒԴԱՂԵԱՆԻ

Կը մասնակցին.— Քնար Ազնաւուր, Բերկրուհի Դաւիթեան, Նոյեմի Շահին–եան եւ Հայկուհի Խտշեան, Տրդատ Նշանեան, Նուբհան Մարգարեան, Ս. Սուրէնեան, Ն. Պշտիկեան, Օ. Սարաֆեան, եւ Արտաշէս Գմբէթեան:

Մուտքի գինը՝ սովորական:

Դիմել՝ Հր. Բալուեան գրատունը, 43, Րիւ Րիշէ, Փարիզ:

Օր. ՍԻՐՎԱՆ ՆԻԿՈՂՈՍԵԱՆ
Պ. ՇԱՐԼ ԵԿԷՆԵԱՆ
Ամուսնացած

7 Յունիս, 1959

## ՅՈՒՆԻՍ 21ԻՆ
## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ

*Սեւրանի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը :*
*Մանրամասնութիւնները՝ յաջորդով :*

## ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ – ԳԻՆԵՁՕՆ

*Ի նպաստ Ժանթիյիի, Պլէթրի Փորթ տ'Իթալիի շրջանի հայկ. դպրոցին :*
*Նախագահութեամբ Կրթ. Յանձնախումբի ատենապետ Պ. Յակոբ Տէր Յակոբեանի :*
*Այս Շաբաթ երեկոյ ժամը 20.30էն մինչեւ կէս գիշեր, Ժանթիյիի նախկին ուսուցիչներու սրահին մէջ*

17, RUE RAYMOND LEFEBVRE

## ԽՆՋՈՅՔ

*ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղը խնջոյք մը կազմակերպած է այս Շաբաթ երեկոյ, ժամը 9ին, Պ. Սիմոնեանի սրճարանը:*
*Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները ու բարեկամները :*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի մարմիններու եւ խումբերու ներկայացուցչական ժողովը՝ այս Շաբաթ, ժամը 20.30-ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ:*
*ՕՐԱԿԱՐԳ.— Զեկոյց պատգամաւորներու եւ ընտրութիւն :*
*ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դաշնակցութեան Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէները:*
*Այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին «Զաւարեան :*
*Այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին «Ականունի» :*
*Այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին «Գէորգ – Չաւուշ» :*
*Այս Կիրակի առաւօտ ժամը տասնին «Արամ» : Կարեւոր օրակարգ : Այս հաւաքոյթներուն ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէն :*
*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուսանողական Ռուբէն Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 3ին, սովորական հաւաքատեղին :*
*Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Երկուշաբթի կէսօրէ ետք ժամը չորսին Քաֆէ Լը Րէժանի մէջ: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է :*
*ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ժողովը այս կիրակի ժամը 15.30ին, Օթէլ Ռաֆֆի, 13 Րիւ Թիւպանօ: Կարեւոր օրակարգ :*
*ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգ. Մուրատ Ռուսումնասիրաց Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ յետոյ ժամը 15.30-ին, Իսիի Խրիմեան սրահը: Նոր վարչութեան ընտրութիւն :*

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ
### ՄԱՐՍԷՅԼ

ԳՐԱԿԱՆ ԴԱՍԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Երկուշաբթի, Յունիս 15, երեկոյեան ժամը 9ին Ֆրանս. Համալսարանի սրահին մէջ :

*Նիւթ՝ ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ*
*«ԻՆԿԱԾ ԲԵՐԴԻ ԻՇԽԱՆՈՒՀԻՆ»*
*Կը մեղադրէ Կ. ՄԵՀԵԱՆ*
*Կը պաշտպանէ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ*
*Դատական կազմին կը նախագահէ*
Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Հ. Բ. Ը. Մ.ը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հիմնադիր՝*
*ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ*
*եւ բարերար՝ ՌԱՓԱՅԷԼ ՄԱՐԿՈՍԵԱՆԻ յիշատակին :*
*Կը հրաւիրուին անոնց յիշատակը յարգողները :*

×

*Այրի Տիկին Տէր Խաչատուրեան, Տէր եւ Տիկին Վէնսան Տարաքճեան, Օր. Սօնիա Տէր Խաչատուրեան, ինչպէս նաեւ Տէր Խաչատուրեան եւ Տարաքճեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցիին մէջ իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝*
*ՍՏԵՓԱՆ ՏԷՐ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ*
*մահուան քառասունքին առթիւ :*
*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :*

×

*Տիկին Մէսրիքեան Ռեփիկա կուգայ ծանուցանել իր մօր Ազատի Զալլաղեանի (Ամերիկա) մահուան Բ. տարելիցին, նաեւ բոլոր Զալլաղեան գերդաստանի զոհերուն (որոնք զոհ գացին 1915ի եղեռնին) որ Ս. պատարագ եւ պաշտօն պիտի կատարուի այս Երկուշաբթի առաւօտ, ժամը 10ին Մարսիլիոյ Հայ Կաթ. Եկեղեցւոյ մէջ :*
*Կը խնդրուի յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Հ. Բ. Ը. Միութեան Մարսէյլի Հայուհեաց մասնախումբի տարեկան պաշտահանդէսը՝ Յունիս 28ին, Կիրակի, ժամը 16էն մինչեւ կէս գիշեր :*



## Հ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ 41-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ
## ԿԸ ՏՕՆՈՒԻ, ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ, ԲԱՑԱՌԻԿ ՇՈՒՔՈՎ

ԿԻՐԱԿԻ, 14 ՅՈՒՆԻՍ ԻՐԻԿՈՒԱՆ ԺԱՄԸ 21 ԻՆ
ՔԱԶԱ Տ'ԻԹԱԼԻԱՅԻ ԸՆԴԱՐՁԱԿ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

*ԿԸ ԽՕՍԻՆ*

ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ ԵՒ Կ. ՄԵՀԵԱՆ

*Եւ Նոր Սերունդի ներկայացուցիչը՝ ՍԱՐՀԱՏ ԳԻԼՃԵԱՆ*
Կ'երգէ Փարիզէն՝ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

*Արտասանութիւն՝* Օր. Է. Կարապետեան, Օր. Ա. Յարութիւնեան, Պ. Յ. Սարգիսեան, *ջութակ՝* Պ. Հրայր Գիլճեան, *դաշնակ՝* Օր. Է. Կարապետեան, *մեներգ՝* Օր. Ժագլին Փափազեան :

ԿԵՆԴԱՆԻ ՊԱՏԿԵՐ ՄԸ
Հ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ՄԷԿ ՆԻՍՏԸ
*(Ա. ՍԱՀԱԿԵԱՆ, ԱԼ. ԽԱՏԻՍԵԱՆ, Լ. ՇԱՆԹ, Ն. ԱՂԲԱԼԵԱՆ, ՋՕՐ. ՍԻԼԻԿԵԱՆ — կ'արտասանեն իրենց պատմական ճառերը)*

ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ, ԿԷՍ ԳԻՇԵՐԷՆ ԵՏՔ

## ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Կ. Խաչի եւ Նոր Սերունդի :*
*Այս Կիրակի ժամը երեքէն մինչեւ կէս գիշեր, Քաշանի քաղաքապետարանի սրահը :*
*Գեղարուեստական բաժին: Կը նուագէ Թարխտ ԳԱՐԵԳԻՆ :*
*Հայկական պարեր Նոր Սերունդի կողմէ :*
*Կը մասնակցին ՆԱՀԱՊԵՏԵԱՆ քոյրերը :*
*Հաղորդակցութիւն Փորթ տ'Օրլէանէն առնել 187 թիւ օթօպիւսը եւ իջնել Փլաստը լա Մէրի (Քաշան) :*

## ՊՕՐՏՕՅԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ «Մուրատ» խումբի, Հայաստանի Հանրապետութեան 41րդ տարեդարձը կը տօնուի այս Կիրակի ժամը 15ին, Կղերականներու սրահը :*
*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ :*

×

## ՆԻՍԻ ՄԷՋ

*Այս Կիրակի կէսօրէ յետոյ ժամը 15.30-ին, Օթէլ Սկրիպի շքեղ սրահին մէջ, 20 Ավընիւ Ժորժ Քլէմանսօ, Նիս :*
*Կը խօսի ընկեր ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ :*

առջնորդներ . կացութիւնը նոյնքան ծանր է՝ որքան 48 ժամ առաջ :

Այնուհետեւ Ֆրանսացի նախարարը անդրադարձաւ խորհրդային մեղադրանքներու անտրամաբանական բնոյթին . — Անշուշտ մենք չենք փափաքիր Պերլինի ներկայ վարչակարգը յաւիտենական դարձնել : Այդ վարչակարգը նուազագոյն չարիքն է՝ մինչեւ որ լուծում մը գտնուի գերմանական հարցին » :

Խօսքը ուղղելով Կրոմիքոյի, Ֆրանսացի նախարարը բացագանչեց .— Զէք ընդունիր գրաւման վարչակարգը, ինչ որ կը նշանակէ թէ դէմ էք Պերլինի արեւմտեան բանակներու ներկայութեան : Բայց կ՚առաջարկէք որ Պերլինի մէջ հաստատուի չորրորդ բանակ մը, խորհրդային բանակ մը : Այն ատեն ի՞նչ պիտի անուանէք նոր վարչակարգը : Այդ ալ գրաւման վարչակարգ մը պիտի չըլլա՞յ արդեօք » :

Կարգ մը կարճատեւ վիճաբանութիւններ եւ ... ժողովը վերջացաւ :

Որոշուեցաւ երկուշաբթի օր դարձեալ նիստ մը գումարել :

Լոյտ եւ Քուվ Տը Միւրվիլ խորհրդակցութիւններ պիտի ունենան իրենց կառավարութիւններուն հետ . Ուրբաթ իրիկուն անոնք մեկնեցան Ժընեւէն :

Կրոմիքօ եւ Հերթըր այնտեղ կը մնան եւ հաւանական է որ հաղորդակցութեան մէջ մտնեն իրենց կառավարութեանց հետ :

Այս պայմաններուն մէջ՝ ժողովին վախճանը մօտալուտ կը համարուի :

Կրոմիքոյի ժխտական դիրքին պատասխանելով՝ հաւանական է որ Արեւմտեանները առաջարկեն ժողովը յետաձգել :

Որքան անստոյգ՝ նոյնքան վտանգաւոր է կացութիւնը : Պարզ է, թէ Ֆրանսա, Անգլիա եւ Ամերիկա պիտի նախընտրեն ժողովէն հրաժարիլ՝ քան թէ Պերլինի իրենց իրաւունքներէն : Բոլոր դուռները փակուած չեն ըլլար անշուշտ՝ եթէ Կրոմիքօ ժխտական իր դիրքը փոխէ :

---

Ալֆորվիլի մէջ մեռած է

ԱՇՈՏ ՆՇԱՆԵԱՆ

(54 տարեկանին)

Յուղարկաւորութեան մանրամասնութիւնները յաջորդով :

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

*ՄԱՐՍԷՅԼ*

Յունիս 18, Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, փրանսական Համալսարանի սրահին մէջ :

Կը խօսի ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Նիւթ՝ ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ԾԱԳՈՒՄԸ, ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ԱՊԱԳԱՆ :

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԸ

ՕԳՈՍՏՈՍ 1էն 30

Փալատրիւ գեղատեսիլ լճի եզերքին (Իզէռ), հսկայ եւ լաւ յարմարութիւններով օժտուած շէնքի մը մէջ :

ՕՐԱԿԱՆ 800 ՖՐԱՆՔ

Արձանագրութեանց համար դիմել՝

ՓԱՐԻԶ՝

17, RUE BLEUE

Շաբաթ օրերը ժամը 15էն 18 :

Միւս շրջաններու մէջ խումբերու վարչութեանց :

Անոնք որոնք կը փափաքին Փարիզէն Պիյէ բոլէքթիֆով ճամբորդել, պէտք է արձանագրուին մինչեւ ՅՈՒԼԻՍ 11 :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կապ. Խաչի Վալանսի մասնաճիւղի պաշտահանդէսը՝ Յունիս 28ին : Մանրամասնութիւնները յաջորդով :



Imprimerie Spéciale

du Journal « Haratch »

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

*ՄԱՐՍԷՅԼ*

ԳՐԱԿԱՆ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Երկուշաբթի, Յունիս 15, երեկոյեան ժամը 9ին Ֆրանս. Համալսարանի սրահին մէջ :

Նիւթ՝ ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ «ԻՆԿԱԾ ԲԵՐԴԻ ԻՇԽԱՆՈՒՀԻՆ»

Կը մեղադրէ Կ. ՄԵՀԵԱՆ

Կը պաշտպանէ Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

Դատական կազմին կը նախագահէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

## ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Սեւրանի մասնաճիւղին :

ԿԻՐԱԿԻ ՅՈՒՆԻՍ 21

ժամը 15էն 24 :

Հայկական պարեր՝ ԽԱՆ - ՃԻԿԻ կողմէ Գեղարուեստական ճոխ յայտագիր : Եւրոպական պարեր՝

MANUEL PIZARRO

Ծանօթ նուագախումբին, ղեկավարութեամբ՝

ATTRACTIONS

Հաղ. միջոցներ .— Փաթէնի եկեղեցիէն առնել 147 թիւ օթօպիւսը եւ իջնել՝ Լիվրի Կարկանի քաղաքապետարանին առջեւ :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Երկուշաբթի կէսօրէ ետք ժամը չորսին Քաֆէ Լը Րէժանի մէջ : Կարեւոր օրակարգ : Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

## ՄԱՅԻՍ 28Ը

*ՏԷՍԻՆԻ ՄԷՋ*

Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, Հ. Յ. Դ. Տան մէջ :

Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ :

ՓՈՆ ՏԸ ՇԷՐՈՒԻԻ ՄԷՋ

Կիրակի կէսօրէ յետոյ ժամը 15ին :

Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ :

## ԴԱՇՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ՕԹՕՔԱՐՈՎ

ԿԻՐԱԿԻ 5 ՅՈՒԼԻՍ

Կազմակերպուած Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ Եկեղեցւոյ Օժանդակ Տիկնանց Միութեան կողմէ : Առաւօտուն, այցելութիւն Փիէրֆոնի դղեակը կէս օրին Քոմփինեի անտառին մէջ Էթան Սէն Փիէրի եզերքը տեղի կ՚ունենայ դաշտահանդէսը :

Օթօքարները կը մեկնին առաւօտուն ժամը ութին, Պ. Ն. Նիկողոսեանին խանութին առջեւէն 121 Ավընիւ Հանրի Պարպիւս, Առնուվիլ՝

Երթ ու դարձի ծախք 800 Ֆրանք, արձանագրուելու համար դիմել Պ. Ն. Նիկողոսեանին՝ հեռ. 446 ա Կոնէս :

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ՕԴԱՍՈՒՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

Կիրակի, Յունիս 21, ժամը 15էն - 22

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ, ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներով, առատ ըմպելի եւ աւանդական «շիշ քէպապ» :

Մուտք 100 փրանք

ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ

200հոգինոց բացօթեայ ճաշ մը նախատեսուած է կէսօրին, անձ գլուխ 800 Ֆրանք ճաշ եւ մուտք : Կը խնդրուի սեղանները կանխաւ ապահովել : (Դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32 Րիւ տը Թրէվիզ, հեռաձայն ՓՐՕ. 77-73) :

ԾԱՆՕԹ .— Շոգեկառք առնել Կար տիւ Նորէն մինչեւ Անկէն : Անցնիլ կամրջակը եւ առնել թիւ վեց օթօպիւսը մինչեւ Կրօլէ կայանը : Թրէնի ժամեր կէսօրէ առաջ 10·45, 11·13, 11·35, 12·5, 13·33, 13·54, 14, 14·30 : Վերադարձ .— 19·21, 19·30, 19·51, 20·09, 20·51, 21·14, 22·16 : Վերջին օթօպիւս ժամը 21ին :

## ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այն ժերոմի Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ Թաղիս եւ շրջակայ Թաղամասերու հաւատացեալ հայ հասարակութեան թէ՝ տեղւոյս Ս. Սահակ Մեսրոպ եկեղեցւոյ անուանակոչութեան եւ հիմնադրութեան 30րդ տարեդարձին առթիւ, այս կիրակի առաւօտ յետ հանդիսաւոր պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, Թաղիս եւ շրջակայ Թաղամասերու համայն ննջեցելոց եւ ի մասնաւորի երջանկայիշատակ Տ. Տ. Գրիգորիս Եպիսկ. Պալաքեանի, Թաղիս շինարար հոգեւոր հովիւ Տ. Շաւարշ քահանայ Թէրզեանի եւ Թաղ. խորհուրդներու եւ եկեղեցւոյ շինութեան յանձնախումբի անդամներու յիշատակին:

Այս բարեպաշտ յիշատակի արարողութեանց առթիւ աւանդական մատաղի օրհնութիւն պիտի կատարուի:

Կը հրաւիրուին բարեպաշտ Թաղեցիները ներկայ գտնուիլ սոյն յիշատակի արարողութեանց:

## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Դպրոցասէրի խնամակալութեան եւ ծնողքներու կողմէ:

28 Յունիս, Կիրակի, կէսօրէ յետոյ ժամը 3 – 10, վարժարանին օդասուն պարտէզին մէջ,

I, BLD. DU NORD, LE RAINCY

Գեղարուեստական ճոխ բաժին:

Երգ, պար, մարզանք եւ հաճելի անակընկալներ:

Պիւֆէ մատչելի գիներով, — շիշ քէպապ:

Մուտքի գին 250 ֆրանք:

ՀԱՂՈՐԴԱԿՑ. ՄԻՋՈՑՆԵՐ. — էկլիզ տը Փանթէնէն առնել 146 թիւ օթօպիւսը եւ իջնել Րէնսի Փավիյեօն:

## ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏ ՎԱՐԺԱՐԱՆ

Տարեվերջի մրցանակաբաշխութեան հանդէսը՝

ԿԻՐԱԿԻ, ՅՈՒՆԻՍ 28

ժամը 16ին:

Կը հրաւիրուին ծնողքներն ու բարեկամները:

## ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ՝ ՆԻՍԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Գէորգ Զաւուշ խումբը կը յայտարարէ թէ բացուած է Նիսի իր գրադարանը՝ «Իշխան Արղութեան մատենադարան»:

Հասցէ՝ 49, Րիւ Լամարթին, Նիս:

Վարիչ՝ Ընկ. ՍՈՒՐԷՆ ԱԼԻՔՍԱՆԵԱՆ:

Մատենադարանի վարչութիւնը կը խնդրէ ընթերցողներէն՝ որ հաճին հազար ֆրանք պահ դնել. գումարը պիտի վերադարձուի՝ երբ գիրքը ստացուի:

Իբրեւ վարձք՝ 50 ֆրանք գիրք գլուխ:

Մատենադարանը ճոխ է հայերէն եւ ֆրանսերէն գիրքերով:

## ՄԱՅԻՍ 28Ը

### ՏԵՍԻՆԻ ՄԷՋ

Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, Հ. Յ. Դ. Տան մէջ:

Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

### ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Կիրակի կէսօրէ յետոյ ժամը 15ին:

Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

### ՄԱՐՍԷՅԼ

Յունիս 18, Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, ֆրանսական Համալսարանի սրահին մէջ:

Կը խօսի ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Նիւթ՝ ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԼԵԶՈՒԻՆ ԾԱԳՈՒՄԸ, ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ԱՊԱԳԱՆ:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ
### (ԿՐԸՆՈՊԼԸ)

Կապոյտ Խաչի Կրընոպլի դպրոցին տարեվերջի քննութիւնները տեղի կ'ունենան, Կիրակի առաւօտ՝ ժամը 9 – 12:

Կը հրաւիրուին ներկայ ըլլալ փափաքող ծնողքներն ու տեղւոյս կազմակերպութեանց ներկայացուցիչները:

Քննութիւններէն անմիջապէս յետոյ՝ կազմակերպուած է մասնաւոր պտոյտ՝ աշակերտութեան եւ ծնողաց համար:

Օթօքարը կը մեկնի դպրոցին առջեւէն, ժամը ճիշդ 13ին:

×

Մրցանակաբաշխութեան դաշտահանդէսը տեղի կ'ունենայ Յունիս 28ի կիրակին: Անձրեւի պարագային, Յուլիս 5ի կիրակին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Վիէնի «Անի» կոմիտէին դաշտահանդէսը՝

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒԼԻՍ 19

Անձրեւի պարագային՝ յաջորդ Կիրակի:

×

Ֆ. Կապ. Խաչի Վալանսի մասնաճիւղի դաշտահանդէսը՝ Յունիս 28ին: Մանրամասնութիւնները յաջորդով:

×

Սեբաստիոյ Նահանգային Միութեան Ուսումնասիրացը կազմակերպած է՝

«Հայ լեզուի օր»ը

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒԼԻՍ 5

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը, այս Չորեքշաբթի գիշեր ժամը ճիշդ 21ին, Քատէի սրահը, շարունակութիւն նախորդ նիւթի: Կը խօսի Հր. Բալուեան «Յ. Թումանեանի Անուշը»: Նոյնպէս կը տրուի Երեւանեան Անուշ օփերային Բ. մասը:

## ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Նոր Սեբաստիոյ Սէն Շամոնի Հ. Յ. Դ. Վարդգէս խումբին կողմէն:

Այս Շաբաթ երեկոյեան ժամը 21էն մինչեւ լոյս, Սալ տէ Ֆէթի մէջ:

Մասնակցութեամբ՝

ORCHESTRE RENÉ HEBERT

Ճոխ պիւֆէ:

Կը հրաւիրուին կեդրոնական Ֆրանսայի բոլոր երիտասարդները:

## ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Սեւրանի մասնաճիւղին:

ԿԻՐԱԿԻ ՅՈՒՆԻՍ 21

ժամը 15էն 24:

Կը նախագահեն

ԱՆՏՐԷ ԹՈՒԹԷՆ եւ ՍԷԶԱՐ ՔՕԼԼԱՎԵՐԻ

(Սեւրանի եւ Լիվրի – Կարկանի քաղաքապետներ):

Լիվրի – Կարկանի ՍԱԼ ՏԷ ՖԷԹԻՆ ՄԷՋ:

Գեղարուեստական ճոխ յայտագիր:

Կը մասնակցին Օր. Օր. Թօփալեան, Պէնկեան:

Հայկական պարեր՝ ԽԱՆ – ՃԻԿԻ կողմէ («ՇԷՀԷՐԱԶԱՏԷՆ»)

Եւրոպական պարեր՝

MANUEL PIZARRO

Ծանօթ նուագախումբին ղեկավարութեամբ՝

ATTRACTIONS

Հաղ. Միջոցներ. — Փանթէնի եկեղեցիէն առնել 147 թիւ օթօպիւսը եւ իջնել՝ Լիվրի Կարկանի քաղաքապետարանին առջեւ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի մարմիններու եւ խումբերու ներկայացուցիչները այս Ուրբաթ իրիկուն ժամը 20·30ին, Մշակոյթի Տան սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն: (Նախորդ ժողովի շարունակութիւն):

ՎԱԼԱՆՍ. — Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8·30ին, Ահարոնեան ակումբը: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, Ահարոնեան ակումբը: Պարտաւորիչ ներկայութիւն: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԿՐԸՆՈՊԼԸ. — Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ:

ՎԱԼԱՆՍԱՀԱՅ զաղութի, Հայ Ազգ. Միութեան նոր տարեշրջանի ընտրութեան առթիւ, ստիպողաբար կը հրաւիրուի հայ հասարակութիւնը անխտիր, ներկայ ըլլալու այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ֆուայէ տիւ Թէաթրըի մէջ: Համաձայն կանոնագրի տրամադրութեան, ներկաներու թիւը օրինաւոր մեծամասնութիւն պիտի նկատուի:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Դուրայի Հայր. Միութեան ընդհ. անդամական ժողովը, այս կիրակի կէսօրէ ետք ժամը 15·30ին, Խրիմեան սրահը: Նոր վարչութեան ընտրութիւն, տարեշրջանի հաշուետուութիւն: Անդամներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ՕԴԱՍՈՒՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

Կիրակի, Յունիս 21, ժամը 15էն – 22

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ, ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներով, առատ ըմպելի եւ աւանդական «շիշ քէպապ»:

Մուտք 100 ֆրանք

ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ

200հոգինոց բացօթեայ ճաշ մը նախատեսուած է կէսօրին, անձ գլուխ 800 ֆրանք ճաշ եւ մուտք: Կը խնդրուի սեղանները կանխաւ ապահովել: (Դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32 Րիւ տը Թրէվիզ, հեռաձայն ՓՐՕ. 77–73):

ԾԱՆՕԹ. — Շոգեկառք առնել Կար տիւ Նորէն մինչեւ Անկէն: Անցնիլ կամրջակը եւ առնել թիւ վեց օթօպիւսը մինչեւ Կրօլէ կայանը: Թրէնի ժամեր կէսօրէ առաջ 10·45, 11·13, 11·35, 12·5, 13·33, 13·54, 14, 14·30: Վերադարձ. — 19·21, 19·30, 19·51, 20·09, 20·51, 21·14, 22·16: Վերջին օթօպիւս ժամը 21ին:

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐՈՒ ՀԱՄԵՐԳ

Կիրակի, Յունիս 28, Սորպոնի Ռիշըլիէօ ամփիթատրոնին մէջ, ժամը 15·30–ին:

ՆԱՅԻՐԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ

Ղեկավար

ԳԷՈՐԳ ԵՍԱՆՊԷԿԵԱՆ

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Միհրան Կարապետեան երկու հազար ֆրանք կը նուիրեն Կապ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին Աշոտ Նշանեանի կսկծալի մահուան առթիւ : (Ստանալ «Յառաջ»էն) :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Շաւիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ, մատաղցու երկու ոչխարները նուիրատուներուն, ինչպէս նաեւ փարիզաբնակ Պ. Ս. Մարգարեանի, իր նուիրած 300 փոկեղներուն համար :

×

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղեց. Թաղ. Խորհուրդս, շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները ի նը–պաստ Եկեղեց. պայծառութեան համար : Այրի Տիկին Վարդանոյշ Կարապետեանի տխուր մահուան առթիւ :

Պ. Պ. Սեդրակ Իսկէնտէրեանէ հազար ֆրանք, Ներսէս Պէկեանէ երկու հազար (Փարիզ), Համբարձում Նուրեանէ հազար : Թաղականութիւնս իր ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալի պարագաներուն :

## ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱՆԳԱՅԻՆ ՄՈՒՐԱՏ

Ուսումնասիրաց Միութիւնը կը կազմակերպէ

## ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՕՐԸ

Սեւրի Մխիթարեան վարժարանին մէջ, Կիրակի 5 Յուլիս, կէսօրէ յետոյ ժամը 15·30էն 22 :

Գեղարուեստական ընտրուած եւ ճոխ բաժինի մը հետ համընթաց, տեղի պիտի ունենան՝ հայերէն արտասանութեան մըրցումներ, որոնք երկու դասակարգի բաժնուած են :

Ա. ԲԱԺԻՆ.— Վերապահուած 10էն 14 տարեկան երկսեռ դեռահասներու :

Բ. ԲԱԺԻՆ.— Վերապահուած 15էն 18 տարեկան երկսեռ պատանիներու :

Այս հանդիսաւորութեան ընթացքին պիտի ընտրուին փարիզեան շրջանի 1959 տարուան լաւագոյն արտասանողները հինգ քննիչ դատաւորներու որոշմամբ :

Իւրաքանչիւր դասակարգի առաջին հանդիսացողը «լաւագոյն արտասանողի» տիտղոսէն զատ, պիտի ստանայ նաեւ արժէքաւոր պարգեւ մը :

Միութիւնս կը խնդրէ բոլոր Թաղային վարժարաններու տեսուչներէն ինչպէս նաեւ ծնողքներէ, այժմէն իսկ դիմել՝

Տիկին Զ. Փէշտիմալճեանի՝

165, RUE DE JAVEL, PARIS 15, TEL. BLO. 19-60

Թեկնածուներու արձանագրութեան համար :

Մուտքը ազատ է :

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

եւ մասնակցութեամբ ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ վարչութեան

Գինեձօն ի պատիւ բանաստեղծ

## ԱՀԱՐՈՆ ՏԱՏՈՒՐԵԱՆԻ

Իր երկու վերջին քերթողական հատորներուն՝ «Բագիններուս կրակին դէմ» եւ «Կարմիր Աւետարան» հրատարակութեան առիթով :

Այս Չորեքշաբթի, ժամը 21ին Քաւէ սրճարանի վերնայարկը :

Կը նախագահէ՝ Պ. Յ. ՏԷՐ – ՅԱԿՈԲԵԱՆ

Կը խօսին՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ եւ Կ. ՄԵՀԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին :

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
## ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան : Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը :

Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի. նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ըստեղծել :

Մեր հատադնորդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր. :

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը :

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են : Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան :

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով :

Դիմել՝ 1 Պուլվ– տիւ Նոր, Լը Րէնսի :

Հեռաձայն՝ Լը Րէնսի 172 :

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐՈՒ ՀԱՄԵՐԳ

Կիրակի, Յունիս 28, Սորպոնի Ռիշըլիէօ ամփիթատրոնին մէջ, ժամը 15·30ին :

ՆԱՅԻՐԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ

Ղեկավար

ԳԷՈՐԳ ԵԱՆՊԷԿԵԱՆ

### ԾԱԽՈՒ Է (ՊԱՏԵՐՈՎ)

Փարիզի բանուկ փողոցի մը մէջ, յարկաբաժին մը՝

Métro : Bonne Nouvelle

Առաջին յարկ, չորս մեծ սենեակ, ամէն յարմարութիւններով (թու. ֆոնփոն), կեդրոնական ջերմութիւն, հեռաձայն :

Մանրամասնութեան համար հեռաձայնել՝

PRO. 44-74

Տունը գնուած օրը տրամադրելի է :

### ԾԱԽՈՒ ՅԱՐԿԱԲԱԺԻՆ

Մօտիկ արուարձանի մը մէջ, վեց սենեակ, խոհանոց, բաղնիք, ջերմութիւն, չորրորդ յարկ, առանց վերելակի : Կարելի է երկու յարկաբաժինի վերածել : Մանրամասնութեանց համար անձամբ դիմել «Յառաջ»ի վարչութեան :

## ՍԱՄՈՒԷԼ-ՄՈՒՐԱՏ ՎԱՐԺԱՐԱՆ

Տարեվերջի մրցանակաբաշխութեան հանդէսը՝

ԿԻՐԱԿԻ, ՅՈՒՆԻՍ 28

ժամը 16ին :

Կը հրաւիրուին ծնողքներն ու բարեկամները :

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Արձանագրութիւնները բացուած են 1959 – 1960 ուսումնական տարեշրջանի համար :

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել տեսչութեան, գրաւոր կամ հեռախօսով, ամէն օր :

26, RUE TROYON, SEVRES

TEL. OBS 18-28

Վարժարանի մէջ լրիւ կ'աւանդուին ազգային գիտութիւնները եւ Ֆրանսական երկրորդական ուսմանց ամբողջական ծրագիրը, մինչեւ Պաքալորէայի առաջին մասը :

## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Դպրոցասէրի խնամակալութեան եւ ծնողքներու կողմէ :

28 Յունիս, Կիրակի, կէսօրէ յետոյ ժամը 3 – 10, վարժարանին օդասուն պարտէզին մէջ,

1, BLD. DU NORD, LE RAINCY

Գեղարուեստական ճոխ բաժին :

Երգ, պար, մարզանք եւ հաճելի անակնկալներ :

Պիւֆէ մատչելի գիներով,— շիշ քէպապ :

Մուտքի գին 250 Ֆրանք :

ՀԱՂՈՐԴԱԿՑ. ՄԻՋՈՑՆԵՐ.— Էկլիզ տը Փանթէնէն առնել 146 թիւ օթոպիւսը եւ իջնել Րէնսի Փավիյեօն :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ
(ԿՐԸՆՈՊԼԸ)

Մրցանակաբաշխութեան դաշտահանդէսը տեղի կ'ունենայ Յունիս 28ի կիրակին : Անձրեւի պարագային, Յուլիս 5ի կիրակին :

## ՄԱՅԻՍ 28Ը ՊԱՆԹԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԷՋ

●

Հայաստանի Հանրապետութեան 41րդ տարեդարձը տեղի ունեցաւ Քաշանի քաղաքապետարանի սրահը, Կիրակի Յունիս 14ին, նախաձեռնութեամբ «Արծիւ» ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Կապ. Խաչի եւ Նոր Սերունդի :

Նախագահ ընկեր Ա. Իսահակեան հանդէսը բանալով բացատրեց օրուան իմաստը, թէ ինչո՞ւ կը տօնենք Մայիս 28ը:

Յիշեց անցեալի մեր լուսաշող դէմքերը եւ փառաբանեց անոնց կատարած մեծ դերը ի խնդիր հայ ժողովուրդի ազատութեան :

Նոր Սերունդի կողմէ ուղերձ մը կարդաց ընկեր Արարատ Մարգարեան:

Գեղարուեստական բաժինը ճոխ էր :

Արտասանեցին Օրիորդներ Շաքէ Յովհաննէսեան եւ Խանչէրեան, ինչպէս նաեւ Վ. Թորոսեան: Երգեցին Նահապետեան քոյրերը եւ Պ. Գալուստեան:

Տեղւոյս Նոր Սերունդի պարախումբը պարեց հայկական պարեր, դաշնակով կ'ընկերանար Տիկին Թորոսեան : Բոլորն ալ արժանացան ջերմ ծափերու :

Պաշտօնական մասէն յետոյ ժողովուրդը բոլորուած սեղաններու շուրջ սկսաւ խնջոյքը, որ տեւեց մինչեւ կէս գիշեր, մէջ ընդ մէջ կը նուագէր Թարխտ Գարեգին:

Ներկաները բաժնուեցան սրահէն հայրենի յիշատակներ տանելով իրենց հետ :

ՕՆՆԻԿ

## ՄԱՅԻՍ 28Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԱԹԷՆՔԻ ՄԷՋ

●

Ինչպէս հայաշատ բոլոր գաղութներուն մէջ՝ Հայաստանի Հանրապետութեան 41րդ տարեդարձը մեծ շուքով տօնուած է նաեւ Աթէնքի մէջ, Յունիս 7ին, ծովածաւալ բազմութեան մը ներկայութեան : Աւելի քան 1500 հոգի լեցուած է «Քենտրիքոն» ընդարձակ թատերասրահը :

Նախագահած է ընկեր Դանիէլ Դանիէլեան, իր բացման խօսքին մէջ շեշտելով թէ ազատ աշխարհի հայութիւնը կը տօնէ պատմական այս թուականը՝ բացի Թուրքիայէն. «զայն չեն տօներ նաեւ կարդ մը հայանուն տրկամիտ մա՛րդիկ»:

Օրուան գլխաւոր բանախօսն էր ընկեր Յակոբ Իսկէնտէրեան, որ յատկապէս հրաւիրուած էր Իտալիայէն: Երիտասարդ ընկերը մօտ յիսուն վայրկեան խանդավառ ճառ մը խօսած է, անդրադառնալով արդի հայ պատմութեան եւ շեշտելով Հ. Յ. Դաշնակցութեան դերը՝ մանաւորապէս մայիսեան հրաշքին մէջ: Յ. Իսկէնտէրեան իր խօսքը վերջացուցած է այն հաւատքով՝ «որ Մայիս 28ի հանդիսութիւնը պիտի տօնենք Երեւանի հրապարակին վրայ եւ հայ ժողովուրդը, փոխանակ օտար կուռքերու, իր յարգանքը պիտի մատուցանէ հայկական ազատագրութեան ճամբուն վրայ ինկած իր հարազատներուն »:

Ընկեր Վարուժան Գնունի կարդացած է յունարէն ուղերձ մը :

Գեղարուեստական բաժնին մէջ «Համազգային»ի երգչախումբը, Յ. Փափազեանի ղեկավարութեամբ երգած է հելլէն եւ ազգային երգեր: Ներկայացուած է խորհրդապատկեր մը՝ Հայկ Նահապետէն մինչեւ Մայիս 28: Եղած են երգեր եւ արտասանութիւններ:

ենք յետագայ նոր ստեղծագործութիւններ՝ նոր ներշնչումներով եւ նոր տեսիլքներով, արդասաւորուած մեր վերածնուած Մայր Երկրի ու մեր հարազատ ժողովրդի կենդանութեան աղբիւրներից:

«ԷՋՄԻԱԾԻՆ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ՄԱՅԻՍ 28Ը ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

★

ՏԷՍԻՆ, (Յատուկ) .— Շաբաթ իրիկուն, (20 Յունիս) Տէսինի հայ գաղութն ալ, թէեւ քիչ մը ուշ, տօնեց Հայաստանի անկախութեան 41րդ տարեդարձը, Հ. Յ. Դ. Տան մէջ, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Տէսինի կոմիտէին, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին, Ֆ. Կ. Խաչին, Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան եւ դպրոցին կրթ. մարմնին :

Բացումը կատարուեցաւ Նոր Սերունդի խումբին « Յառաջ Նահատակ»ով, որ ունկնդրուեցաւ յոտնկայս :

Օրուան նախագահը, այս տողերը գրողը, համառօտ պատմականը ըրաւ ազատութեան եւ անկախութեան համար դարերու ընթացքին հայութեան մղած աննկուն պայքարին, հրաւիրեց ներկաները յոտնկայս յարգել յիշատակը անկախութեան համար իրենց կեանքը նուիրած հերոսներուն :

Գեղարուեստական բաժինը դժբախտաբար շատ կարճ էր: Յաջող արտասանութիւններ ըրին, դպրոցին աշակերտուհիներէն Թագուհի Սալլապաշեան, Տիրուհի Պարտագճեան, Նուարդ Գալուստեան, եւ Ժընըվիէվ Պարտագճեան : Նաեւ պատանի Գէորգ Պառաւեան :

Իսկ Օր. Անժէլ Կարապետեան ձայնի քնքոյշ խաղերով մեներգեց «Քելէ քելէ»ն: Բոլորն ալ գնահատուեցան ծափերով:

Նոր Սերունդի խումբը դարձեալ երգեց « Ջան իմ երկիր»ը :

Բանախօսն էր ընկեր Աշոտ Իսահակեան, որ գեղեցիկ օրինակներով նախ հաստատեց թէ մարդիկ ըլլան թէ ազգերը գաղափարներով է որ կը սնանին ու կ'ապրին: Հայը, որ այնքան տառապանքներ կրած է, կրցած է շնորհիւ իր տոկունութեան, ու հաւատքին դարերու անջրպետը կտրել ու անցնիլ :

Ապա, ընկերը ծանրացաւ Մայիս 28ի շուրջ հակառակորդներու ըրած անիմաստ վերագրումներուն վրայ, որոնք նախատինք են անկախութեան համար ինկած հերոսներուն յիշատակին: Բարեբախտաբար Հայաստանի ներկայ վարիչները հետզհետէ սկսած են ճանչնալ անկախութեան համար մղուած կռիւներուն պատմական ճշմարտութիւնն ու արժէքը :

Այս առթիւ ընկերը կարդաց հատուած մը Հայպետհրատի կողմէ վերջերս հրատարակուած գրքէ մը, ուր յիշուած են Մայիսեան դէպքերը, անշուշտ խեղաթիւրուած :

Ընկեր Իսահակեան յոյս ներշնչեց թէ վաղ թէ ուշ պիտի իրականանան Հայուն ազգային իղձերը :

Երեկոյթը փակուեցաւ անգամ մըն ալ մեզ ներշնչելով նոր հաւատք ու յոյս :

Գ. Պ.

×

### Հ. Մ. Ը. Մ. ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ

★

ՎԻԷՆ, (Յատուկ) .— Անձրեւոտ օրերէն վերջ, մէկէն արեւափայլ Կիրակի մը եղաւ մեզի համար Յունիս 14ը :

Հ. Մ. Ը. Մ.ական երկու քոյր Միութեանց հանդիպումը, համեմուած գեղեցիկ դաշտահանդէսով մը, անկեղծ զգացումներու ջերմագին արտանայտութիւններու փոխանակութիւն մը եղաւ. ինչ որ, դժբախտաբար, այս օրերուն, այնքան հազուագիւտ դարձած է :

Առաւօտեան ժամը 9էն առաջ, իրարանցում մը կայ, անսովոր՝ Վիէնի հայաբնակ թաղերուն մէջ: Հ. Մ. Ը. Մ.ի բաերկամներ, վարչական անդամներ եւ մարզիկներ, անհամբեր կը սպասեն «օթոքառին»:

Եւ ահա, հսկայ հանրակառքը, խմբակներ հաւաքելով կը յառաջանայ մինչեւ վերջին կայանը՝ ուրկէ կը սուրայ դէպի Փոնթէվէքի բարձունքը եւ անկէ շիտակ դէպի Կրընոպլը :

Գեղեցիկ, հանգստաւէտ ճամբաներ, մշակուած դաշտեր, գիւղեր, քաղաքներ, անտառներ, պարտէզներ եւ պուրակներ իրարու կը յաջորդեն շատ բնական կերպով. կը սահին, կ'անցնին արագ, մինչեւ որ ընդոստ կը ցցուի մեր առջեւ Սպիտակ լեռան հսկայ եւ լայնածաւալ զանգուածը, իսկ ստորոտը Կրընոպլը քաղաքը, մեծաշէն եւ փարթամ :

Ժամը 11 է արդէն, կիրակնօրեայ մեծ շուկայէն կ'անցնինք եւ կ'ուղղուինք դէպի Ֆօնթէն, եւ անկէ կը սկսինք մագլցիլ, բարձրանալ օձապտոյտ, աւելի վեր՝ դէպի «Պօրըկար»:

Եւ ահա մեր հանգրուանը, Կրընոպլի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան դաշտահանդէսի հովասուն վայրը, պատմական դղեակի մը հողամաս :

Բարձրախօսը կը թնդայ. հայկական սիրուն եղանակներ կ'արձագանգեն: Թանկագին եւ յարգելի բարեկամներ կը մօտենան. բարեգալուստի եւ ողջագուրումի ինչ յուզիչ պահեր :

Հայկական ճոխ սեղանները — դետնի վրայ, կանաչ խոտերուն մէջ, հիանալի պատկեր մը կը ներկայացնեն :

Եւ հազիւ լրացած. ըստ յայտագրին՝ երկու քոյր Միութեանց մարզիկները, Ֆօնթէնի մարզադաշտին վրայ, իրենց բարեկամական մրցումը կը կատարեն : Օդը տաք է, կիզիչ արեւը, չեշտակի իր ճառագայթները կ'արձակէ փոշոտ դաշտին վրայ: Ներկաները առանց կողմնակալ պոռչտուքներու, կը ծափահարեն եւ բարեկամական թելադրանքներով կը քաջալերեն տղաքը, որոնք Հ. Մ. Ը. Մ.ի դրօշին եւ շունչին ներքեւ շատ գեղեցիկ եւ ներդաշնակ խաղարկութիւն մը կը ցուցադրեն :

Անշուշտ յաղթական մը անհրաժեշտ է. եւ այդ յաղթականը հանդիսացաւ Կրընոպլի Հ. Մ. Ը. Մ.ը :

Ոտնագնդակի այս եղբայրական հանդիպումէն վերջ, դաշտահանդէսի պաշտօնական բացումը տեղի ունեցաւ շատ կոկիկ եւ համեստ գեղարուեստական միջոցներով:

Տիկին Ա. Կիւմիւշեանի ղեկավարութեամբ երգչախումբը երգեց «Հայ Արիներու» քայլերգը եւ ուրիշ գեղջուկ երգ մը: Յաջորդաբար՝ մեներգեց Օր. Թ. Ղարիպեան եւ արտասանեց Օր. Էլիզ Մուրատեան: Եղան պարեր, եւ երկու « ֆանթէզիներ» եղբ. Կ. Զարգարեանի կողմէ (Վիէնէն):

Իսկ օրուան նախագահի եւ բանախօսի պատիւը ինկած էր տողերս գրողին :

Բանախօսութեան ամբողջութիւնը նուիրուած էր յատկապէս երիտասարդութեան եւ անոր հայապահպանման դժուարին գործին .— ինչպէս նաեւ տարեց սերունդի անվհատ աշխատանքին:

Եւ այս խանդավառ, հայրենաբաղձ մթնոլորտին մէջ, ներկաները օրինակելի փութկոտութեամբ մասնակցեցան կարճատեւ հանգանակութեան մը, որուն արդիւնքը եղաւ 31000 Ֆր։ Ծափահարելի և յուսադրիչ երեւոյթ. երբ ուրիշներ, տարբեր հովերէ տարուած կ'ուզեն անտեսել Կրընոպլի Հ. Մ. Ը. Մ.ի չորեքամեայ գոյութիւնը եւ անոր անշեղ, հաստատամիտ ազգային ուղղութիւնը :

Մայրամուտը մօտ է. գրեթէ իրիկուն կ'ըլլայ. նորէն ճոխ սեղանները կը պարզուին. ամէն կողմէ կը լսուին խինդ ու ծիծաղ. երգ ու կանչ :

Եւ ահա, ճիշդ ատենին, հեղինակաւոր ազդը բարձրախօսէն կը տրուի մեկնումի: Վիէնցիք դժկամակութեամբ կը բաժնուին Կրընոպլի իրենց հիւրասէր բարեկամներէն եւ մարզիկ եղբայրներէն:

Նորէն սիրոյ եւ յարգանքի ջերմ արտայայտութիւններ, հրաժեշտի եւ ձեռքի յուզիչ սեղմումներ, ինչպէս նաեւ համբոյրներ :

Մեր հանրակառքը, արդէն պատրաստ, անզգալաբար կը շարժի, հետզհետէ կ'արագանայ, կ'իջնէ դէպի վար, դէպի Կրընոպլը, եւ անկէ դէպի Վիէն, ուր կը հասնինք ժամը 9ին:

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի համար յիշատակելի օր մը:

Կ. Տ.

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (28)

# ԼՌԱԾ ՋՐԱՂԱՑԸ

### ԺԵ.

Մօփի ըրէք, ծխնիներու թեթեւ ճռընչիւն մը... յետոյ փեղկերէն մէկը կը բացուի, եւ, յանդուգն կերպով դուրս հակած, փաթթուած իր արձակուած մազերուն մէջ, որոնք կը թռչկոտին, Կէրթրուտի դէմքը դէպի իրեն կը ցցուի, մունջ եւ կրքոտ :

Երկվայրկեան մը ... եւ ահա կ'աներեւութանայ :

Պէտք է ճչէ՞ ուրախութենէն թէ պէտք է լայ ... ինքն ալ չէր գիտեր :

Այժմ կրնար հեշտալի թմբիրի մը անձնատուր ըլլալ. ինչ ազդեցութիւն պիտի ունենային իր վրայ բուրմունքները .

Հանեց հագուստները եւ անկողին մըտաւ. բայց, նախ քան քնանալու տրամադրուիլը, անգամ մըն ալ չոկուեցաւ, դողդղացող ձեռքով մը առաւ ծաղկամանը եւ դէմքը մխրճեց ծաղիկներուն մէջ :

Ինչ նմանութիւն այն առաջին իրիկուան հետ, եւ սակայն ինչ տարբերութիւն: Այն ատեն խաղաղ եւ ուրախ, իսկ այժմ ...

Յիշատակ մը արթնցաւ յանկարծ որ սառեցուց իր դէմքը . իր մատները աւելի ուժգնութեամբ սեղմեցին ամանը. մօփի ըրաւ, մօփի ըրաւ.... Իրեն թուեցաւ որ այնքան անկեղծ այն ծիծաղը, որուն երաժշտութիւնը անցեալին մէջ մինչեւ իրեն հասած էր տախտակամածին մէջէն, նորէն պիտի հնչէ:

Մօփի ըրաւ աւելցող անձկութեամբ, մինչեւ որ գլուխը լեցուեցաւ բզզիւնով մը որ կ'որոտար, որ կը պայթէր սուր ծիծաղի մը պէս ... Ատելութեան եւ նախանձի ահռելի զգացում մը բարձրացաւ իր մէջ յանկարծ: Կատաղի ծիծաղով մը հեռուն նետեց ծաղկամանը, որ ջախջախուեցաւ սենեակին մէջտեղ :

Յաջորդ առաւօտ, Ժան ամօթով լեցուած էր: Այս բոլորը դէշ երազ մը թըւեցաւ իրեն: Հաւաքեց ծաղկամանին բեկորները, իրարու պատշաճեցուց, եւ որոշեց որ երթայ բան մը գնէ զանոնք իրար փակցնելու համար: Ի զուր մտածեց. այդ մասին, չի կրցաւ յստակ տեսնել այն զգացումը, որ իրեն գործել տուաւ այդ անմիտ արարքը: Ինչ որ գիտէր, այն էր թէ, ստոր եւ պժգալի զգացում մըն էր :

Աւելի քան երբեք սրտագին կերպով սեղմեց իր եղբօր ձեռքը եւ անոր նայեցաւ իր լուռ աչքերուն խորէն, կարծես թէ ծանր սխալ մը գործած էր, որուն համար ներում կը խնդրէր :

Կէրթրուտ այն զունատութիւնն ունէր զոր կուտայ անքուն գիշեր մը: Իր ակնարկը կը խուսափէր Ժանի ակնարկէն եւ սուրճի գաւաթը, զոր անոր կուտար, շարժելէն կը հնչէր իր դողդղացող ձեռքին մէջ :

Աւելի աղէկ բան մը չկրնալով գտնել, սկսաւ խօսիլ պարահանդէսի կօշիկներու մասին, չօշափելու համար միեւնոյն ատեն Մառթէնի դիտաւորութիւնները: Մառթէն ոչ մէկ առարկութիւն ըրաւ. պէտք է որ Կէրթրուտ իսկոյն չափ առնել տար, եւ, որովհետեւ անիկա կը մերժէր կօշիկը հանել Ժանի ներկայութեան, Մառթէն «ծեքծեքուհի» կոչեց զայն :

Կէրթրուտ նեղացաւ, սկսաւ լալ եւ դուրս ելաւ: Երեկոյին, վերբերեցաւ շըփոթ եւ իր չափին հետ. Ժան կրնար իր նամակը ղրկել :

Բայց կոտրած ծաղկամանին յիշատակը ծանրօրէն կը ճնշէր իր սրտին վրայ, եւ, երբ առանձին մնաց Կէրթրուտի հետ, դժնդակօրէն խոստովանեցաւ .

— Մօփի ըրէ, ճախաւերութիւն մը ըրի .

— Ի՞նչ .

– Կոտրեցի ծաղկամանը .

— Ա՜.... ճախաւերութի՞ւն է ատիկա.

— Ի՞նչ կ'ուզէիր որ ըլլար..

— Կը մտածէի թէ դիտմամբ ըրած էիր, պատասխանեց անիկա, խիստ անտարբեր երեւոյթով մը :

Ժան չպատասխանեց եւ Կէրթրուտ մեղմօրէն շարժեց գլուխը կարծես ըսել ուզէր, «շատ իրաւունք ունէի ուրեմն»:

### ԺԶ.

Օրեր անցան: Ժանի եւ Կէրթրուտի միջեւ յարաբերութիւնները աւելի պաղ էին քան առաջ: Իրարմէ չէին խուսափեր, նոյն իսկ կը խօսակցէին իրարու հետ, բայց չէին կրնար վերագտնել երբեմնի անկեղծ եւ ազատ մտերմութեան ուրախ շեշտը :

« Անիկա դէչ մտքով առաւ համբոյրդ», ըսաւ ինքնիրեն Ժան, առանց սակայն անդրադառնալու թէ ինքն ալ փոխուած էր:

— Ի՞նչ ունիք, տղաք, ըսաւ Մառթէն իրիկուն մը, յանդիմանելով : Կոկորդնիդ ժանգոտեցա՞ւ, որ այլ եւս երբեք չէք երգեր :

Երկուքն ալ, վայրկեան մը լուռ մնացին. յետոյ Կէրթրուտ, կէս մը Ժանի դարձած .

— Կ'ուզե՞ս .

Անիկա հաւանութեան նշան ըրաւ, բայց որովհետեւ աչքերը իր վրայ չէր դարձուցած, կարծեց թէ չէր պատասխաներ : Կէրթրուտ Մառթէնի դառնալով, ըսաւ.

Հ. ԶՈՒՏԷՐՄԱՆ

(Շար.)

